Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ




# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն. — Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 33—86։



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 27 ՏԱՐԻՆ

*1917 թ. Հոկտեմբերի 25-ին Ռուսաստանում հաղթանակեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիան։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիան արմատական կերպով լուծեց նաև ազգային հարցը։ Նա փշրեց ցարական Ռուսաստանի փոքր ժողովուրդներին կաշկանդող շղթաները և նրանց ազատագրեց իմպերիալիզմից։ Ռևոլյուցիայի հաղթանակի առաջին օրերին ընկեր Ստալինը գրեց. «Պարզ է դառնում, որ ճնշված ժողովուրդների ազատագրման ուղին անցնում է բանվորական այն ռևոլյուցիայի միջոցով, որն սկսվել է Ռուսաստանում Հոկտեմբերին։ Այժմ բոլորի համար պարզ է, որ Ռուսաստանի ժողովուրդների ճակատագիրը և մանավանդ հայ ժողովրդի ճակատագիրը, սեր-*

տարին կապված է Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի ճակատագրի հետ» (Ի. Վ. Ստալին, Երկեր, հատոր 4-րդ, էջ 25—26):

Հետագա ժամանակաշրջանի ողջ պատմությունն ապացուցեց ընկեր Ստալինի այս խոսքերի մարգարեությունը: Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի հաղթանակը ազատություն բերեց հայ ժողովրդին:

Զինված Լենինի-Ստալինի հանճարեղ ցուցումներով, Հայաստանի բոլշևիկները եռանդուն աշխատանք ծավալեցին սովետական կարգերի հաստատման համար Հայաստանում: Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի հաղթանակի լուրը՝ Իշխանությունը Սովետներին անցնելու լուրը ջերմ խանդավառությամբ ընդունեցին Հայաստանի աշխատավորները:

Իր մի շարք միտինգներում ընդունած որոշումների մեջ հայ ժողովուրդը ողջունելով Ժողովրդական Կոմիսարների Սովետի դեկրետները, վճռականապես դեմ արտահայտվեց Անդրկովկասյան բուրժուական կառավարությանը, Անդրկովկասը Ռուսաստանից անջատելու փորձերին:

Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի ազդեցության տակ Հայաստանի շրջաններում չքա-



վոր գյուղացիները բռնագրավում են կուլակների ու կալվածատերերի հողերը, տեղի են ունենում գյուղացիական բունտեր, ընդհարումներ, բանվորների գործադուլներ: Հայաստանի աշխատավորությունը գնալով ավելի է համակվում բոլշևիկյան գաղափարներով, ռևոլյուցիայի գաղափարներով:

Սակայն Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի հաղթանակն Անդրկովկասում անմիջապես տեղի չունեցավ: Մինչև Սովետական իշխանության հաղթանակը, Անդրկովկասը, կարելի է ասել, 3 տարի ապրեց քաղաքացիական պայքարի մի շրջան. այդ շրջանում Անդրկովկասի հակառևոլյուցիոն բուրժուազիան կարողացավ ժամանակավորապես հաստատել իր արյունալի տիրապետությունը:

Հոկտեմբերյան Ռևոլյուցիան կատաղի թշնամությամբ դիմավորեց Անդրկովկասյան բուրժուազիան և հենց սկզբից ձեռնարկեց կոնկրետ միջոցառումներ, իր դասակարգային տիրապետությունն ամրապնդելու և ռևոլյուցիայի դեմ պայքարելու համար: 1917 թ. նոյեմբերի 27-ին Անդրկովկասի բուրժուական պարտիաների գլխավորությամբ ստեղծվեց Անդրկովկասյան Սեյմը և Կոմիսարիատը:

Անդրկովկասյան Սեյմն ու Կոմիսարիատը իրենից ներկայացնում էր Անդրկովկասի հակառևոլյուցիոն ուժերի կոալիցիան ընդդեմ Սովետական իշխանության, ընդդեմ Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի:

Անդրկովկասյան Կոմիսարիատը վարում էր հակաժողովրդական, հակառևոլյուցիոն քաղաքականություն, որի համար էլ Անդրկովկասի բանվորներն ու գյուղացիները բոլշևիկների ղեկավարությամբ պայքար ծավալեցին բուրժուական-կոնտրռևոլյուցիոն այդ կառավարության դեմ:

Անդրկովկասյան Կոմիսարիատի վարած քաղաքականությունն իր բնական ընթացքով, իրերի տրամաբանական զարգացումով հասցրեց նրան, որ 1918 թ. մայիսին կազմալուծվեց Անդրկովկասյան Կոմիսարիատը: Անդրկովկասում առաջացան երեք ազգային բուրժուական ռեսպուբլիկաներ: Այդ ձևով ծնունդ առավ «անկախ» բուրժուական դաշնակցական Հայաստանի ռեսպուբլիկան, որը հայ ժողովրդին բերեց նոր դժբախտություններ:

Դաշնակցության տխրահռչակ տիրապետությունը տևեց մինչև 1920 թ. նոյեմբեր ամիսը: Հայաստանն այդ ամբողջ ժամանա-




կաշրջանում ապրում է ամենամռայլ օրեր: Ծայր աստիճան քայքայվում է երկրի ժողովրդական տնտեսությունը, արտադրողական ուժերն անընդհատ դեպի կործանում են գնում: Եղած գործարաններն ու արհեստանոցները քայքայվել էին, արդյունաբերության արտադրանքն ամենաչնչին չափերի էր հասնում: Ծայր աստիճանի քայքայման վիճակ էր ապրում գյուղատնտեսությունը, անասնապահությունը: Հայաստանի ժողովրդական տնտեսության արտադրանքը դաշնակցության տիրապետության ողջ ժամանակաշրջանում միշտ գտնվել է մի քանի անգամ ավելի ցածր մակարդակի վրա, քան 1913 թվականին: Բոլորովին քայքայման վիճակում էր գտնվում Հայաստանի երկաթուղին:

Ժողովրդական տնտեսության այս ընդհանուր քայքայումը տեղի էր ունենում երկրի ներսում ստեղծված անարխիայի պայմաններում:

Դաշնակցության տիրապետության ողջ շրջանում չդադարեցին Հայաստանում ներքին, ազգամիջյան ընդհարումները, որոնց արդյունքն էր լինում միշտ ինչպես հայ աշխատավորների ֆիզիկական ոչնչացումն

ու նրա տնտեսության քայքայումը, թալանը և այլն, այնպես էլ Հայաստանում ապրող ադրբեջանցի աշխատավորության ֆիզիկական ոչնչացումն ու նրա տնտեսության կործանումը:

Անասելի ծանր նստեց հայ ժողովրդի վրա թյուրքական ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ օկուպացիան: Թյուրք ասկյարները, որպես նվաճողներ ոչ միայն անողոքաբար ոչնչացնում էին հայ բնակչությանը, այլև թալանում էին նրա ունեցվածքը: Թյուրքական օկուպացիան այնպիսի լափող չափեր էր ընդունել, որ թյուրքերը հետագայում իրենց նահանջի ժամանակ, քանդում ու տանում էին անգամ երկաթուղիների շպալները, կայարանների ողջ գույքը, հանում էին անգամ դռները, լուսամուտների փեղկերը, ապակիները: Եթե դրան ավելացնենք այն սանձարձակությունը, որ թույլ էր տալիս իրեն օկուպանտ ասկյարը հայ գեղջուկի և գեղջկուհու նկատմամբ, ապա բոլորովին պարզ կլինի թե, ինչքան մռայլ էին հայ աշխատավոր ժողովրդի համար օսմանյան նվաճողների օկուպացիայի ամիսները: Միայն Լոռի-Փամբակի գավառի նյութական կորուստը թյուրքական օկուպացիայի հետևանքով



կազմում էր 45 միլիոն ռուբլի ոսկով, մյուս շրջաններում այդ գումարն ավելի էր:

Սակայն միայն օտարները չէին, որ թալանում, կողոպտում, կոտորում էին հայ ժողովրդին: Օտարներից հետ չէին մնում հայ վամպիրները: Դաշնակցության տիրապետության շրջանում չտեսնված ծավալ էր ստացել այսպես կոչված «մաուզերիզմը»: Դաշնակցական մաուզերիստները թալանի, կողոպուտի, սպանության էին ենթարկում խաղաղ աշխատավոր բնակչությանը: Չտեսնված չափերի էր հասել պետական կաշառակերությունը, մինիստրների, բարձրաստիճան, ցածրաստիճան չինովնիկների սանձարձակ կողոպուտը, պետական և մասնավոր գույքերի թալանը:

Վերջապես, հայ ժողովրդի վիճակը այդ բոլորի հետ միասին ծանրացավ նաև նրանով, որ ծայր առավ մի չտեսնված գաղթականություն: Ավելի քան 450.000 հայ գաղթականներ էին թափառում Հայաստանում: Տասնյակ հազարների էր հասնում որբերի թիվը:

Այս բոլորի արդյունքը եղավ սովն ու համաճարակը, որը գալիս էր հնձելու հայ ժողովրդին: 1918 թ. նոյեմբերին վերջացավ Հայաստանի հացի պաշարը: 1919 թ. գար-

նանը համատարած սովն ու համաճարակը սկսեցին իրենց ավերիչ գործը կատարել։ Իրենց — դաշնակցականների — տվյալներով 6 ամսվա ընթացքում սովից ու հիվանդությունից մեռավ 180.000 մարդ։

Դաշնակցության տիրապետության օրոք, ինչպես ճշմարտացի կերպով նշել է ընկեր Միկոյանը, Հայաստանը սովի երկիր էր, գաղթականների երկիր, որբերի երկիր։ Հայ ժողովուրդը կանգնել էր իր կործանման անդունդի եզրին։

Սակայն դաշնակցական այդ տեռորիստական տիրապետության տակ, խոր ընդհատակում աշխատում և պայքարում էին Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները, պատրաստելով ժողովրդական մասսաներին զինված ապստամբության, տապալելու դաշնակների արյունոտ տիրապետությունը և հաստատելու Սովետական կարգեր։

Տնտեսական ու քաղաքական այն ծանր վիճակը, որ ապրում էր հայ ժողովուրդը, բնականաբար չէր կարող նրան ակտիվ պայքարի չհանել դաշնակցության տիրապետության դեմ։ Դաշնակցության ողջ տիրապետության շրջանում չդադարեց հայ բան-



վորության և աշխատավոր գյուղացիության դասակարգային պայքարը՝ բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ։ Դեռևս 1919 թվականին մեծ դժգոհություններ, խլրտումներ տեղի ունեցան կառավարության դեմ Շուստովի գործարանի բանվորների ու ծառայողների մեջ, որոնք ղեկավարվում էին բոլշևիկների կողմից։ Պայքարի առաջից գնում էին երկաթուղային բանվորները, առանձնապես Ալեքսանդրապոլի երկաթուղայինները, որոնք հանդես էին գալիս իրենց կոնկրետ ռևոլյուցիոն պահանջներով։ Ռևոլյուցիոն ելույթներ էին տեղի ունենում նաև գյուղում, օրինակ՝ Էջմիածնի գավառի գյուղացիները տեսնելով, որ դաշնակցական կառավարությունը ոչ միայն արմատապես չի լուծում հողային հարցը, այլ ընդհակառակը, հովանավորում է կուլակներին ու կալվածատերերին, իրենք բռնությամբ գրավում էին կալվածատիրական հողերը։

Հայաստանի բոլշևիկների ռևոլյուցիոն ակտիվ աշխատանքն ավելի մեծ թափ է ստանում, երբ Կարմիր Բանակը քաղաքացիական պատերազմում ջախջախելով իր բոլոր թշնամիներին, մոտենում է Կովկասի սահմաններին։

Բոլշևիկյան գաղափարները օրեցօր ավելի էին տարածվում մասսաների մեջ, ստեղծվում էին բոլշևիկյան գաղտնի բջիջներ, բոլշևիկները գաղտնի գրականություն էին տարածում, կազմակերպում գաղտնի ժողովներ բանվորության մեջ, զորքի մեջ։ Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները օգնություն և ղեկավարություն էին ստանում Կովկասյան Երկրային Կոմիտեի կողմից։

Դաշնակցական կառավարությունն ամեն քայլափոխում հետևում էր բոլշևիկների ռևոլյուցիոն գործունեությանը և խիստ հալածանքներ կիրառում նրա դեմ։ 1919 թվականի հունվարի 31-ին Երևանում, Դիլիջանում, տեղի ունեցան կոմունիստների մի շարք ձերբակալություններ։

Սակայն որքան էլ ուժեղանային ռեպրեսիաները, բոլշևիկներն ավելի էին ծավալում իրենց ռևոլյուցիոն գործունեությունը մասսաների մեջ։

1920 թվականի ապրիլի 28-ին սովետական կարգեր հաստատվեցին Ադրբեջանում, որը կենդանի արձագանք գտավ ողջ Անդրկովկասում և առանձնապես Հայաստանում։ 1920 թվականի մայիսին մասսայական ցույցեր տեղի ունեցան Ալեքսանդրապոլում,



Երևանում, Ղարսում, Նոր-Բայազետում, Ղարաքիլիսայում, Դիլիջանում, Սարիղամիշում և այլն։ Ամենուրեք Մայիսմեկյան ցույցերն անցան բոլշևիկների ակտիվ ղեկավարությամբ, որտեղ ցուցարարները ողջունում էին սովետական կարգերի ստեղծումն Ադրբեջանում և պահանջում էին տապալել դաշնակցական կառավարությունը։ Մայիսմեկյան ցույցերը մայիսի 8-ից սկսած՝ վերածվեցին զինված ապստամբության։ Ալեքպոլում ապստամբները տոկուն բոլշևիկ Մուսայելյանի ղեկավարությամբ տապալեցին դաշնակցականների տեղական իշխանությունը և հայտարարեցին Սովետական իշխանություն։ Ղարսում, զինվորների ակտիվ մասնակցությամբ, տեղի ունեցավ ապստամբություն, որը ղեկավարում էր Ղուկաս Ղուկասյանը։ Ապստամբությունն արագորեն ընդգրկեց Սարիղամիշը, Նոր-Բայազետը, Իջևանը, Զանգեզուրը, Դիլիջանը, Ղազախը, Շամշադինը։

Սակայն մայիսյան ապստամբությունն արյան մեջ խեղդվեց դաշնակցական խմբապետների կողմից։ Երկրում ծայր առավ չըտեսնված սպիտակ տեռոր։ Ամենուրեք բանտարկում ու գնդակահարում էին բոլշե-

վիկներին։ Դաշնակցականների արյունոտ ձեռքով գնդակահարվեցին մայիսյան ապստամբության պանծալի ղեկավարները։ Մայիսյան ապստամբության ճնշումը չամրապնդեց դաշնակցականների տիրապետությունը։ Տրված զոհերի արյունն իզուր չանցավ։ Մայիսյան ապստամբության քաջարի ղեկավարները իրենց կյանքի վերջին րոպեին անգամ հավատում էին Սովետական իշխանության հաղթանակի գաղափարին, հավատում էին բոլշևիկների պարտիայի մեծ ուժին, մասսաների ռևոլյուցիոն կարողություններին։

Մայիսյան ապստամբության ճնշումից հետո, Հայաստանում չդադարեց ժողովրդական մասսաների ռևոլյուցիոն պայքարը։ 1920 թվականի հունիսի 18-ին զինված ընդհարումներ տեղի ունեցան Ղազախում և Շամշադինում ապստամբ գյուղացիների ու դաշնակցական բանդաների միջև։ Հուլիսի սկզբներին պայքարը սուր բնույթ ստացավ Զանգեզուրում և մի շարք այլ շրջաններում։ Օգոստոսին կատաղի կռիվներ տեղի ունեցան ապստամբների և դաշնակցականների միջև Ղարաբաղում և Զանգեզուրում։ Սեպտեմբերին գյուղացիական մասսայական ե-



լույթներ տեղի ունեցան Զանգեզուրում և Իջևանում։ Հոկտեմբերի սկզբներին ուժեղ կռիվներ տեղի ունեցան ապստամբների և դաշնակների միջև՝ Ղազախում։

Հայ ժողովրդի ռևոլյուցիոնականությանը մեծ չափով նպաստեց 1920 թվականի սեպտեմբերի 1—7-ին Բաքվում տեղի ունեցած Արևելքի ժողովուրդների առաջին համագումարը, որին մասնակցում էին ավելի քան 2000 դելեգատ՝ 37 ժողովուրդներից, որոնց թվում՝ 157 հայ։

Սեպտեմբերի 9-ին Բաքվում բացվեց Արևելքի երիտասարդության առաջին համագումարը, որը ողջույնի հեռագիր ուղարկեց Հայաստանի երիտասարդությանը, կոչ անելով՝ շարունակել պայքարը շահագործողների դեմ։

Սեպտեմբերի 10-ին Բաքվում բացվեց Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների արտասահմանյան կոնֆերենցիան, որին մասնակցում էր 50 դելեգատ։ Կոնֆերենցիան քննեց Հայաստանի ռևոլյուցիոն շարժումների ծավալման հարցերը։

Նոյեմբերի 4-ին Բաքու եկավ ընկեր Ստալինը։ Հայաստանի ռևոլյուցիոներները լավ գիտեին, որ ընկեր Ստալինը հայ ժո-

ղովրդին չի թողնի առանց օգնության։ Ժամանելով Բաքու, ընկեր Ստալինը կոնկրետ խնդիր դրեց բոլշևիկյան կազմակերպությունների առաջ՝ «...ինչ էլ որ լինի հարկավոր է փրկել Հայաստանը, շուտով փրկել Հայաստանը»։

Նոյեմբերին կոմունիստների գլխավորությամբ ապստամբությունն ընդգրկեց համարյա ողջ Հայաստանը։ Նոյեմբերի 20-ից ապստամբների ձեռքին էր գտնվում Շամշադինը, Իջևանի, Դիլիջանի շրջանների մեծ մասը։ Նոյեմբերի 28-ին ապստամբները օգնության հասած Կարմիր Բանակի առաջին զորամասերի հետ գրավեցին Քարվանսարան։ Նոյեմբերի 29-ին կազմակերպվեց Ռազմահեղափոխական Կոմիտե և նույն օրը Հայաստանը հայտարարվեց Սովետական։

Նոյեմբերի 30-ին Ռևկոմը դիմեց Լենինին ողջույնով և օգնության խնդրելով։

Լենինն անմիջապես ուղարկեց պատասխան հեռագիր Հայաստանի Ռազմա-Ռևոլյուցիոն Կոմիտեին, որի մեջ ասված է. «Ողջունում եմ իմպերիալիզմի լծից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»։

Դեկտեմբերի 4-ին «Պրավդա»-յում լույս



տեսավ ընկեր Ստալինի «Կեցցե՛ Սովետական Հայաստանը» հոդվածը։«...Թող իմանան բոլոր նրանք, ում հարկն է իմանալ, որ այսպես կոչված՝ «Հայկական հարցը», որի վրա իզուր գլուխ էին ջարդում իմպերիալիստական դիպլոմատիայի հին գայլերը, ի վիճակի եղավ լուծելու Սովետական իշխանությունը»— գրում էր ընկեր Ստալինը։

Հայաստանում Սովետական կարգերի հաստատման լուրը արագորեն տարածվեց ողջ երկրում։ Հանդիսավոր նիստեր տեղի ունեցան՝ Վլադիկավկազում, Բաքվում և մի շարք այլ քաղաքներում։

Օրջոնիկիձեի գլխավորությամբ անմիջապես Հայաստան ուղարկվեց մի գնացք հաց։ Ռևկոմին օգնության ուղարկվեցին Կարմիր Բանակի նոր զորամասեր՝ 11-րդ Կարմիր Բանակի զորամասերը Օրջոնիկիձեի, Կիրովի և Միկոյանի գլխավորությամբ։

Հայաստանի Ռևկոմը Կարմիր Բանակի զորամասերի հետ միասին դեկտեմբերի 2-ին մտավ Երևան։ Այդ նույն օրը Հայաստանի Սովետական Ռեսպուբլիկայի զորքերի հրամանատարը գրեց հրաման, որտեղ բանակը վերանվանվեց Կարմիր Բանակ, ստեղծվեց Կոմիսարների ինստիտուտը։

Դեկտեմբերի 5-ին կազմակերպվեց Կարմիր Բանակի Հայկական հետևակային դիվիզիան։

Դեկտեմբերի 6-ին կազմակերպվեց Հակառևոլյուցիայի դեմ պայքարող Արտակարգ հանձնաժողով։

Դեկտեմբերի 13-ին դեկրետով լիկվիդացիայի ենթարկվեցին նահանգապետությունը, գավառային կոմիսարները, դաշնակցական միլիցիան, «դեմոկրատական» դումաները։

Դեկտեմբերի 19-ին դեկրետով լիկվիդացիայի ենթարկվեցին դաշնակցական վարչական բաժանումը, դատական սիստեմը և մաուզերիստական բանակը։

Դեկտեմբերի 20-ին բանկերը հայտարարվեցին պետական։

Դեկտեմբերի 28-ին պետական հայտարարվեց ողջ հողը։ Բազմաչարչար հայ գյուղացուն վերջապես հող տրվեց։

Հայաստանի Սովետական կառավարությունն անմիջապես ձեռնամուխ եղավ պետական շինարարությանը, տնտեսության վերականգնմանը, խաղաղ շինարարական աշխատանքի։

Իմպերիալիստական Եվրոպայի և Թյուր-



քիայի նվաճողական նոր պլանների առաջն առնելու և այն մեկ ընդմիշտ կասեցնելու համար 1920 թվականի դեկտեմբերի 2-ին Երևանում ՌՍՖՍՌ-ի և Հայկական ՍՍՌ-ի միջև կնքվեց համաձայնություն՝ Հայաստանի անկախության ճանաչման մասին, որտեղ միաժամանակ Կարմիր Բանակը պարտավորվում էր անհրաժեշտության դեպքում զինված օգնություն ցույց տալ Հայաստանի Սոցիալիստական Ռեսպուբլիկային։

Ճիշտ է, 1921 թվականի փետրվարին Հայաստանի տապալված բուրժուազիան դաշնակցության ղեկավարությամբ և օտարերկրյա իմպերիալիստների, Թյուրքիայի և մենշևիկյան Վրաստանի բարոյական ու քաղաքական օգնությամբ հակառևոլյուցիոն ապստամբություն բարձրացրեց, երիտասարդ Սովետական Հայաստանը ներգրավելով քաղաքացիական նոր պատերազմի մեջ, սակայն նա շուտով լիկվիդացիայի ենթարկվեց և կրկին ու մեկ ընդմիշտ Հայաստանում հաստատվեցին Սովետական կարգեր։ Հայաստանը ոտք դրեց սոցիալիզմի ճանապարհի վրա, մեկ ընդմիշտ իր ուսերից թոթափելով շահագործման ծանր լուծը։

***

Ջախջախելով դաշնակցական բուրժուական պետական ապարատը, էքսպրոպրիացիայի ենթարկելով կապիտալիստական ու կալվածատիրական դասակարգերին, Սովետական Հայաստանը, սովետական մյուս ռեսպուբլիկաների հետ միասին, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, բոլշևիկների Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ ծայր աստիճան քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնմանը, սոցիալիստական հասարակության կառուցմանը։ Այս 27 տարվա ընթացքում Հայաստանը ապրեց չտեսնված տնտեսական, կուլտուրական ծաղկում։ Ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասից, հետամնաց ագրարային երկրից Հայաստանը դարձավ հզոր ինդուստրիալ-ագրարային երկիր։

Նախասովետական Հայաստանը ռուսական կայսրության մեջ արդյունաբերական տեսակետից ամենահետամնաց երկրամասերից էր։ Արդյունաբերական ձեռնարկությունները մեծ մասամբ արհեստանոցային բնույթ էին կրում, իսկ եղած պղնձարդյունաբերությունն էլ պատկանում էր ֆրանսիական կապիտալին։ Եթե 1913 թ. արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը ժողովրդական տնտեսության համախառն արտադրանքի մեջ կազ-



մում էր 23,9 տոկոսը, ապա դաշնակցության տիրապետության օրոք նա հասավ համարյա զերոյի, կարելի է ասել արդյունաբերությունը բառիս բուն իմաստով բացակայում էր։

Սովետական իշխանության տարիների ընթացքում հիմք դրվեց Հայաստանում ժամանակակից սոցիալիստական արդյունաբերության։

Սովետական իշխանության տարիներին, շնորհիվ լենինյան-ստալինյան ազգային իմաստուն քաղաքականության, կերպարանափոխվեց Հայաստանի ողջ ժողովրդական տնտեսության դեմքը և առաջին հերթին արդյունաբերության դեմքը։ Ծնունդ առան արդյունաբերության մի շարք նոր ճյուղեր, որոնք ոչ միայն մեծ դեր կատարեցին Հայաստանի աշխատավորության նյութական բարեկեցության բարելավման գործում, այլև իրենց արժանի տեղը գրավեցին Սովետական Մեծ Միության ողջ ժողովրդական տնտեսության մեջ։ Նախ և առաջ հիմք դրվեց ծանր արդյունաբերությանը։ Ռեսպուբլիկայում լայն զարգացում ստացավ լեռնային արդյունաբերությունը։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ իրենց պատվավոր տեղն են գրավում Ալավերդու, Ջանգեզուրի պղնձի արտադրությունը և նրա հետ կապված գունավոր մետաղամշակության զարգացումը։ Հատկապես

վերջին տարիների ընթացքում լայն զարգացում է ստացել տուֆի, կրաքարի, մարմարի, հրակայուն կավերի, բազալտի, գրանիտի, պեմզայի, քարածխի և այլ հանքանյութերի արտադրությունը։

Հայաստանի արդյունաբերության, ինչպես և ողջ ժողովրդական տնտեսության զարգացման գործում մեծ դեր է կատարում Հայաստանի էլեկտրաէներգետիկ տնտեսությունը։ Դեռևս 1921 թ. Լենինը Անդրկովկասի կոմունիստներին ուղղած իր նամակում էլեկտրական էներգիայի օգտագործման հարցը համարեց Անդրկովկասի բոլշևիկների հիմնական հարցերից մեկը, որի լայն կիրառմամբ միայն Լենինը հնարավոր էր համարում ժողովրդական մասսաների, առանձնապես աշխատավոր գյուղացիության նյութական վիճակի բարելավումը։ Լենինի այդ իմաստուն ցուցումները պատվով կատարեց հայ ժողովուրդը։ Հայաստանի հիդրոէներգետիկ տնտեսությունը չըտեսնված զարգացում ապրեց, որը մեծ չափով նպաստեց ռեսպուբլիկայի ինչպես ողջ ժողովրդական տնտեսության, այնպես էլ առանձնապես արդյունաբերության զարգացմանը։ Սովետական իշխանության տարիներին կառուցվեցին խոշոր հիդրոկայաններ Երևանում, Լենինականում, Ձորագետում, Քա-



նաքեռում, տասնյակ մանր հիդրոէլեկտրակայաններ շրջաններում և գյուղերում։

Եթե Հայաստանում 1913թ. հիդրոէներգիայի արտադրությունը չնչին չափերի էր հասնում, իսկ դաշնակցության տիրապետության օրոք էլ ավելի կրճատվեց, ապա այժմ Հայաստանի հիդրոէլեկտրակայանները երկրին տալիս են 100 անգամ ավելի էլեկտրաէներգիա, իսկ էլեկտրաէներգիայի մի հոգու միջին սպառումը աճել է 70 անգամ։ Էլեկտրաէներգիան էլ ավելի մեծ չափեր կստանա Սևան-Կասկադի գործարկումից հետո։

Սովետական իշխանության տարիներին ծնունդ առավ Քիմիական արդյունաբերությունը։ Զարկ տրվեց մեքենաշինության և մետաղամշակման, շինանյութերի, փայտամըշակման արդյունաբերությանը։ Լայն զարգացում ստացավ սննդի արդյունաբերությունը։ Հայաստանի գյուղատնտեսությունն իր բազմապիսի հումքի արտադրանքով ամենանըպաստավոր բազան ստեղծեց սննդի արդյունաբերության զարգացման համար։ Սովետական Հայաստանի սննդարդյունաբերությունն ունի ավելի քան 31 տարբեր ճյուղ և թողարկում է ավելի քան 400 զանազան արտադրանքներ։ Նրա համախառն արտադրանքը 1944 թ. կազմեց 1087 միլիոն ռուբլի։

Մննդարդյունաբերության մեջ առանձնապես աչքի ընկնող տեղ է գրավում գինեգործությունը, կոնսերվային, մսի և կաթի, պանրի ու յուղի արդյունաբերությունը։

Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ առաջավոր տեղ է գրավում տեքստիլ արդյունաբերությունը, մետաքսի, կաշվի արտադրությունը։

Այսպիսով Հայաստանի արդյունաբերությունը 27 տարվա ընթացքում դարձավ ժողովրդական տնտեսության առաջատար, նրա դեմքը որոշող ճյուղը։ Արդեն 1940 թ. Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 21 անգամ գերազանցեց 1913 թ. մակարդակը, նրա տեսակարար կշիռը ժողովրդական տնտեսության համախառն արտադրանքի մեջ հասավ 77,7 տոկոսի։

Սովետական իշխանության 27 տարիների ընթացքում, շնորհիվ կոլխոզային կարգերի հաղթանակի, շնորհիվ մանր-անհատական տնտեսությունները կոլեկտիվ տնտեսության ռելսերի վրա փոխադրելուն, աննախընթաց վերելք ապրեց նաև գյուղատնտեսությունը, տալով թե՛ ցանքատարածությունների ընդարձակում և թե՛ բերքատվության բարձրացում։

Համաշխարհային պատերազմի և դաշնակ-



ցության տիրապետության շրջանում Հայաստանի գյուղատնտեսությունը անկում ապրեց։ Ցանքերի ընդհանուր տարածությունը կրճատվեց ավելի քան 4 անգամ. 1919 թ. ցանքերի ընդհանուր տարածությունը կազմում էր 83 հազար հեկտար։ 1940թ. ցանքերի տարածությունը 1913 թ. համեմատությամբ աճեց 25 տոկոսով, իսկ 1919 թ. համեմատությամբ 5 անգամ. միայն հացահատիկի համախառն արտադրանքը 1913 թ. համեմատությամբ աճեց 2 անգամ, որը վկայում է նաև բերքատվության զգալի բարձրացման մասին։

Սակայն Հայաստանի սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման դինամիկան միայն ցանքերի ընդհանուր տարածության ավելացմամբ կամ համախառն արտադրանքի աճմամբ չէ որ բնութագրվում է։ Խնդիրն այն է, որ Սովետական իշխանության տարիներին Հայաստանի գյուղատնտեսությունը դարձավ ժամանակակից տեխնիկայի բազայի վրա հիմնված գյուղատնտեսություն, կիրառելով ագրոտեխնիկայի, ցանքաշրջանառության սկզբունքները։ Այդ փոփոխությունները արտահայտվեցին մի շարք գծերով։ Նախ զգալի չափով աճեց ոռոգվող տարածությունը. Հայաստանի ողջ ոռոգվող տարածությունը 1913 թ. համեմատությամբ աճել է 2

անգամ, իսկ 1919 թ. համեմատությամբ 3 անգամից ավելի։

Եթե մինչև ռևոլյուցիան Հայաստանի գյուղատնտեսության մեջ համարյա մեքենաներ չկային, ապա 1945 թ. Հայաստանի կոլխոզային դաշտերում աշխատում էին տասնյակ հարյուրավոր տրակտոր, որոնք մշակում էին 350.000 հեկտարից ավելի հող։ 38 ՄՏ կայանները սպասարկում են ավելի քան 800 կոլխոզ և 19 սովխոզ։ Եթե նախասովետական Հայաստանում բարձրորակ ագրոնոմիական կադրեր հատ ու կենտ կարելի էր հաշվել, ապա Սովետական իշխանության տարիներին Հայաստանի կոլխոզային գյուղը ստացավ ավելի քան 2000 գյուղատնտեսության տարբեր ճյուղերի բարձրորակ մասնագետներ։

Զգալի տեղաշարժեր կատարվեցին գյուղատնտեսության տարբեր կուլտուրաների զարգացման բնագավառում, առանձնապես աճեց տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունն ու այդ կուլտուրաների բերքատվությունը։ Այսպես օրինակ 1919 թ. համեմատությամբ կարտոֆիլի ցանքատարածությունն աճել է ավելի քան 13 անգամ, ըստ որում բերքատվությունն էլ բարձրացել է 4-5 անգամ։ Եթե բամբակի ցանքի տարածու-



թյունը 1919 թվին կազմում էր 600 հեկտար, ապա Սովետական իշխանության տարիներին հասավ մինչև 17.000 հեկտարի, այսինքն աճ մոտ 290—300 անգամ։ Եթե ծխախոտի կուլտուրայի տարածությունը 1919 թ. կազմում էր ընդամենը 100 հեկտար, ապա 1945 թ. նա արդեն կազմում էր ավելի քան 8000 հեկտար։ Սովետական իշխանության տարիներին արմատավորվեցին մի շարք նոր կուլտուրաներ, ինչպես օրինակ վարդագույն խորդենի, շաքարի ճակնդեղի, դանդրավուշի կուլտուրաները և այլն։ Մեծ չափով աճեց բնակչության կարիքները բավարարելու տեսակետից կարևոր նշանակություն ունեցող բանջարանոցային կուլտուրաների ցանքատարածությունը, 1919 թ. 700 հեկտարից 1945 թ. հասնելով 12.000 հեկտարի։ Ոռոգման և անմշակ հողատարածությունների սիստեմատիկ յուրացման շնորհիվ զգալի չափով զարգացավ նաև այգեգործությունը։ 1919 թ. համեմատությամբ խաղողի այգիների տարածությունն աճել է 2 անգամ, պտղատու այգիների տարածությունը 3,7 անգամ, ըստ որում աճել է և նրանց համախառն արտադրանքը։

Համաշխարհային պատերազմի և դաշնակցության տիրապետության օրոք առանձնապես մեծ անկում ապրեց Հայաստա-

նի անասնապահությունը։ Միայն Սովետական իշխանությունը, կոլխոզային կարգերը պայմաններ ստեղծեցին սոցիալիստական անասնապահության բուռն վերելքի համար։ 1919 թ. համեմատությամբ ռեսպուբլիկայում խոշոր եղջյուրավոր անասունների գլխաքանակն աճել է 2 անգամ, մանր եղջյուրավոր անասուններինը՝ 2,5 անգամ, խոզերինը՝ 9 անգամ, ըստ որում անասունների կեսից ավելին գտնվում է կոլխոզային ֆերմաներում։

Այսպիսով շնորհիվ բոլշևիկների պարտիայի իմաստուն քաղաքականության, շնորհիվ պարտիայի ու կառավարության և անձամբ ընկեր Ստալինի ամենօրյա հոգատարության, Հայաստանում ստեղծվեց նոր— սոցիալիստական գյուղատնտեսություն՝ հիմնված ժամանակակից տեխնիկայի բազայի վրա, որը ստեղծեց լիակատար պայմաններ հայ աշխատավոր գյուղացիությանը մեկընդմիշտ ազատագրվելու կարիքից, քայքայումից և կանգնելու ունևոր կյանքի ուղու վրա։

Հայաստանի ժողովրդական տնտեսության բուռն վերելքի բազայի վրա և պարտիայի ու կառավարության ամենօրյա հոգատարու-



թյան շնորհիվ մեծ փոփոխություններ տեղի ունեցան հայ ժողովրդի կյանքի մյուս բնագավառներում։

Ցարիզմի օրոք Հայաստանի ազգաբնակչության 90 տոկոսը անգրագետ էր։ Դաշնակցության արյունոտ տիրապետության շրջանում քայքայվեցին նաև եղած հատ ու կենտ դպրոցները։ 1918—1919 թ. Հայաստանում կար ընդամենը 166 դպրոց 18.600 աշակերտով, 19 մանկապարտեզ 800 երեխաներով, չկար բարձրագույն ոչ մի ուսումնական հաստատություն, չկային գյուղական ակումբներ, գյուղերում կինոներ, թատրոններ և այլն։ Այդ բոլորի հետևանքն էր կազմում բնակչության կուլտուրական չտեսնված ցածր մակարդակը։

Հայաստանը դարձավ համատարած գրագիտության երկիր։ Հայաստանում 1945 թ. կար 1.139 դպրոց 263.000 աշակերտով, 213 մանկապարտեզ 13.455 երեխայով, 13 բարձրագույն ուսումնական հաստատություն 13.000 ուսանողով, ինչպիսիք են Մոլոտովի անվան Պետական համալսարանը, Հայկական և Ռուսական մանկավարժական ինստիտուտները, Բժշկական, Գյուղատնտեսական, Պոլիտեխնիկ, Անասնաբուժական, Թատե-

րական, Գեղարվեստական ինստիտուտները և այլն։ Հայաստանի համարյա բոլոր գյուղերում գործում են գյուղական ակումբներ, շրջկենտրոններում թատրոններ։ Կինոն դարձել է մասսաների կենսական պահանջներից մեկը։

Զտեսնված զարգացում, վերելք ապրեց գիտությունը։ Հայաստանի գիտական մտքի զարգացման մեջ խոշոր դեր է կատարում Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիան, որի հիմնադրումը հանդիսանում է լենինյան-ստալինյան իմաստուն ազգային քաղաքականության հաղթանակի, պարտիայի ու կառավարության և անձամբ ընկեր Ստալինի հոգատարության արդյունք։ Հայաստանի Գիտությունների Ակադեմիայի սիստեմում գործում են 17 ինստիտուտներ, 19 տարբեր գիտա-հետազոտական հաստատություններ։ Նրա շուրջն են համախմբված 21 ակադեմիկոսներ, 17 անդամ-թղթակիցներ 82 պրոֆեսոր-դոկտոր, 180 գիտության թեկնածու-դոցենտ, 89 ասպիրանտներ և բազմաթիվ ավագ ու կրտսեր գիտական աշխատողներ, որոնց ընդհանուր թիվը հասնում է 600-ի։ Հայաստանի գիտնականները իրենց գիտելիքները ծառայեցնում են ժողովրդա-



կան տնտեսության տարբեր բնագավառների զարգացման գործին։

Զարգացավ ժողովրդական առողջապահության գործը։ Բուժական հիմնարկների թիվը 1913 թ. կազմում էր 6 միավոր, իսկ դաշնակցության տիրապետության օրոք նրանք էլ քայքայվեցին։ 1940 թ. Հայաստանում կար 102 բուժական հիմնարկ, մահճակալների թիվը աճել էր 18 անգամ։ Հիմնադրվեցին մի շարք սանատորիաներ և բազմաթիվ հանգստյան տներ։

Աննախընթաց վերելք ապրեց սովետահայ գրականությունը, արվեստը։ Հայաստանի գրողները, արվեստագետները իրենց ստեղծագործություններով ծառայում են կոմունիզմի հոյակապ շենքի կառուցմանը, մասսաների կոմունիստական դաստիարակությանը։

Այսպիսով հայ ժողովուրդը տապալելով դաշնակցականների արյունոտ տիրապետությունը, հաստատելով սովետական կարգեր, սովետական մյուս ժողովուրդների հետ միասին իրականացնելով ստալինյան հնգամյակները մինչև 1940 թիվը արմատապես վերափոխեց երկրի դեմքը, վերացրեց մարդու կողմից մարդու շահագործումը, մեր

երկրում կառուցվեց սոցիալիստական հասարակարգը։

***

1941 թվին ֆաշիստական Գերմանիան Սովետական Միության դեմ ավազակային պատերազմ սկսելու կապակցությամբ, վերջացավ խաղաղ շինարարական աշխատանքի շրջանը նաև Հայաստանում։ Սովետական մյուս ժողովուրդների հետ միասին, հայ ժողովուրդը, որպես մեկ մարդ ոտքի կանգնեց իր սոցիալիստական Հայրենիքը իմպերիալիստական գիշատիչներից պաշտպանելու, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի նվաճումները պաշտպանելու, սովետական ժողովուրդների պետական ազգային անկախությունը պաշտպանելու։

Պարտիայի և մեծ Ստալինի կոչով ամենակարճ ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի ողջ տնտեսությունը վերակառուցվեց պատերազմի պայմաններին համապատասխան։ Բովանդակ հայ ժողովրդի մարտական լոզունգը դարձավ «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար»։

Պատերազմի հենց առաջին օրերին ռազ-



մաճակատ մեկնեցին տասնյակ հազար հայ երիտասարդներ, որոնք մինչև վերջ քաջաբար կռվեցին Հայրենիքի համար Կարմիր Բանակի շարքերում։ Հայ մարտիկները պատվով կատարեցին հայ ժողովրդի մեծ նակազը, որտեղ ասվում էր՝ «Ատեցեք թշնամուն ձեր հոգու ամբողջ ուժով, թող այդ ատելությունը ձեր կրծքերը դարձնի պողպատակուռ վրահ, ձեր բազուկներին տա անսպառ կարողություն։ Թող նոր ուժով վերակենդանանա ձեր մեջ մեր քաջ նախնիների խիզախությունը։

Սպանեցե՛ք գերմանական օկուպանտներին։

Ոչնչացրե՛ք ֆաշիստական ոհմակը։ Ժամանակակիցները և գալիք սերունդները երախտագիտությամբ, անմահ փառքով կպսակեն ձեզ, Հայրենական Մեծ Պատերազմի անվեհեր մարտիկներին՝ սովետական մարդկանց արյան վրեժը լուծելու համար, սովետական սրբազան հողը ֆաշիստական աղտեղությունից մաքրելու համար։

...Մեր ավագ եղբայր ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ մարտնչեցե՛ք թշնամու դեմ մեր եղբայրական ժողովուրդների զավակների հետ կողք-կողքի, ձեռք-ձեռքի տված»։

Հայ ժողովրդի խիզախ զավակները հերոսաբար կռվեցին Հայրենական Պատերազմի բոլոր ճակատամասերում, Կարմիր Բանակի հետ միասին ապրելով և՛ նահանջի դառնությունները և՛ հաղթանակի բերկրանքները։ Սևաստոպոլի հերոսական պաշտպանության մեջ աչքի ընկան հազարավոր հայ մարտիկներ։

Մոսկվայի մեծ ճակատամարտի ակտիվ մասնակիցներ էին հայ անվանի գեներալներ Բաղրամյանը, Սարգիս Մարտիրոսյանը, Բարսեղովը, Գասպարյանը, Հայկ Մարտիրոսյանը, Գինոսյանը, հազարավոր զինվորներ։

Լենինգրադի ռազմաճակատում, հերոս քաղաքի պաշտպանության դիրքերումն էին կռվում հայ գեներալներ Բենիամին Գալստյանը, Հայկ Թումանյանը, Նիկոլայ Հովհաննիսյանը, ստալինյան բազե, Սովետական Միության կրկնակի հերոս Նելսոն Ստեփանյանը և հարյուրավոր հայ հերոսներ։

Հայ գեներալները, հրամանատարները, մարտիկները իրենց անվեհերությամբ ու անմոռանալի սխրագործություններով արժանի տեղ գրավեցին Ստալինգրադի, Հյու-



սիսային Կովկասի պաշտպանության գործում։

Հայ մարտիկները իրենց մարտական տրադիցիան պաշտպանեցին և էլ ավելի բազմապատկեցին, երբ Կարմիր Բանակը Գեներալիսիմուս Ստալինի ղեկավարությամբ վերջնականապես խլեց ռազմական գործողությունների նախաձեռնությունը թշնամուց և անցավ սովետական երկրի մաքրմանը թշնամուց և նրա ջախջախմանը հենց իր որջում։ Անմոռաց հերոսությամբ պսակեցին հայ մարտիկները իրենց զենքի ուժը Ուկրաինայի, Մերձ Բալթիկայի, Ղրիմի, Բելոռուսիայի, Մոլդավիայի ազատագրման գործում։

Հայ մարտիկները ակտիվ մասնակցեցին ֆաշիստական Գերմանիայի զորքերի վերջնական ջախջախմանը Ռումինիայում, Բուլղարիայում, Հունգարիայում, Ավստրիայում, Հարավսլավիայում, Չեխոսլովակիայում, Լեհաստանում, Ֆինլանդիայում և վերջապես բուն Գերմանիայում։ Հայ զինվորները Սովետական Մեծ Միության սահմաններից այն կողմ ողջ Կարմիր Բանակի հետ միասին կատարեցին ազատագրական մեծ միսիա, ֆաշիստական ճիրաններից ա-

պատագրելով Եվրոպայի ստրկացած ժողովուրդներին։

Հայրենական Մեծ Պատերազմի ընթացքում բազմաթիվ մարտիկներ, հրամանատարներ, գեներալներ արժանացան Սովետական Միության Հերոսի կոչման, տասնյակ հազարավոր զինվորներ պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով։

Ռազմաճակատից հետ չմնաց թիկունքը։ Հայաստանի բանվոր դասակարգը, կոլխոզային գյուղացիությունը, աշխատավոր ինտելիգենցիան իրենց անձնուրաց աշխատանքով օժանդակում էին սովետական զենքի հաղթանակին։ Արագորեն վերակառուցվելով ռազմական պահանջներին համապատասխան, Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունները պատերազմի տարիներին յուրացրին ավելի քան 270 անուն տարբեր արտադրանք, որոնք մեծ մասամբ ծառայում էին ճակատի պահանջներին։ Հայաստանի մի շարք գործարաններ, կարևոր արտադրանքներ էին տալիս Միության մյուս ռեսպուբլիկաների ռազմական արդյունաբերությանը։ Բացի ռազմական բնույթ ունեցող



արտադրանքներից, Հայաստանի արդյունաբերությունը Կարմիր Բանակին մատակարարում էր հանդերձանքով, կենսամթերքներով, խմիչքներով, ծխախոտով և այլն։

Հերոսաբար էր աշխատում Հայաստանի կոլխոզային գյուղը։ Չնայած գյուղի տղամարդ աշխատավոր ձեռքը հիմնականում բանակ էր գնացել և պակասում էր այն, այնուամենայնիվ Հայաստանի գյուղատնտեսության արտադրանքը պատերազմի տարիներին չպակասեց, այլ ընդհակառակը ավելի աճեց։ Հայաստանի կոլխոզային գյուղը երկրին, Կարմիր Բանակին տվեց ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ, քան մինչ պատերազմը։

***

Հայրենական պատերազմի հաղթական ավարտումից հետո Հայկական ՍՍՌ-ն Սովետական Միության մյուս ռեսպուբլիկաների հետ միասին թևակոխեց իր զարգացման 3-րդ շրջանը՝ հետպատերազմյան խաղաղ շինարարության ժամանակաշրջանը։ Պատե-

րազմի տարիներին բավականաչափ տուժեց Սովետական Միության ողջ ժողովրդական տնտեսությունը։ Հետպատերազմյան խաղաղ ժամանակաշրջանում մեր երկիրը տնտեսապես, քաղաքականապես և ռազմականապես է՛լ ավելի հզոր տերություն դարձնելը, պատերազմի նոր հրձիգներին հարվածելը, միջազգային խաղաղություն պաշտպանելը, նոր հրամայական խնդիրներ դրեցին մեր պարտիայի ու ժողովրդի առաջ։ Ստալինի հանճարեղ ցուցումներով մշակվեց ու սկսվեց իրագործվել ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. ստալինյան նոր հնգամյա պլանը։

Ստալինյան նոր հնգամյա պլանով Հայաստանի ժողովրդական տնտեսության առաջ խնդիր է դրված վերականգնել արդյունաբերության և գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը և այնուհետև զգալի չափերով գերազանցել այն։

Ստալինյան նոր հնգամյա պլանով նա-



խատեսվում է ապահովել ծանր արդյունաբերության, լայն սպառման առարկաներ արտադրող արդյունաբերության, շինարարական ինդուստրիայի, էլ ավելի հզոր զարգացում, բարելավել մասսաների նյութական-կենցաղային վիճակը, ավելացնել պետական—նյութական ռեզերվներն ու պաշարները, ավելացնել ժողովրդական եկամուտը, է՛լ ավելի զարգացնել գյուղատնտեսությունը։ Ստալինյան նոր հնգամյակի վերջում՝ 1950 թվին Հայաստանի արդյունաբերության արտադրանքը 1940 թվի համեմատությամբ աճելու է 2,1 անգամ։ Ցանքաշրջանառության լրիվ կիրառման, ոռոգման տարածությունների ընդարձակման հետևանքով զգալի չափերով պետք է ավելանա գյուղատնտեսության համախառն արտադրանքը, բարձրանա անասունների մթերատվությունը։ Նոր հնգամյակում ավելի քան մեկ միլիարդ 420 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներ են կատարվելու նոր շինարարության մեջ։ Աննախընթաց կերպով աճելու է մասսաների նյութական—կենցաղային վիճակի բարելավումը։

Սովետական իշխանության 27 տարին

հայ ժողովուրդը դիմավորում է մեծ նվաճումներով ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Ստալինյան նոր հնգամյակի առաջին երկու տարվա պլանների հաջող իրականացումը ինչպես ողջ միության մեջ, այնպես էլ Հայաստանում վկայում է ժողովրդական տնտեսության նոր բուռն վերելքի մասին։ Արդեն 1946 թվականին Սովետական Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1945 թվականի համեմատությամբ աճ տվեց 13 տոկոսով։ Ավելի փայլուն հաղթանակի հասավ Հայկական ռեսպուբլիկան նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանների կատարման գործում։ Հայաստանի տեղական արդյունաբերությունը, արտադրական կոոպերացիան արդեն կատարել են երկրորդ տարվա պլանը։ Ավելի քան 68 ձեռնարկություններ, գործարաններ նույնպես կատարել են երկրորդ տարվա պլանը։ Հայաստանի ողջ արդյունաբերությունը տասը ամսվա պլանը կատարել է 110 տոկոսով։ Այդ բոլորի հետևանքով արդյունաբերության համախառն արտադրանքը 1947 թվին 1946 թվի համեմատությամբ աճել է ավելի քան 25 տոկոսով։



Արդյունաբերությունից հետ չի մնում գյուղատնտեսությունը։ Հայաստանի կոլխոզնիկները պատվով կատարեցին առաջնորդին տված խոստումը, 1947 թվականի սեպտեմբերի 15-ին կատարելով հացամթերումների տարեկան պլանը և պլանից դուրս պետությանն են հանձնում հարյուր հազարավոր փութ հաց և գյուղատնտեսական այլ մթերքներ։

Համեմատած 1946 թ. հետ հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը 1947 թվին ավելացել է 39 տոկոսով, շաքարի ճակնդեղի բերքահավաքը գերազանցում է ավելի քան 2,7 անգամ, ծխախոտի տերևահավաքը 25 տոկոսով, կարտոֆիլի հավաքումը երկու անգամ և այլն։

Մեծ նվաճումներ են ձեռք բերվել նաև կուլտուրայի, գիտության, արվեստի և այլ բնագավառներում։

Համաշխարհային առաջին իմպերիալիստական պատերազմը հարյուր հազարավոր հայ աշխատավորների տարագիրներ դարձրեց։ Արտասահմանում ապրող հայ աշխատավորությունը, չնայած դաշնակցության

հակասովետական Նատաղի ագիտացիային, Սովետական Հայաստանի մեջ՝ էր տեսնում իր իսկական Հայրենիքը, իր փրկության հույսը, իր լավագույն ապագան։ Սովետական կառավարության 1945 թ. դեկտեմբերի 21-ի որոշմամբ, թույլատրվեց կազմակերպելու արտասահմանում ապրող հայերի ներգաղթ Սովետական Հայաստան։ Արդեն մոտ 80 հազար հայ աշխատավորներ վերադարձել են Հայրենիք և մեր ողջ ժողովրդի հետ կերտում են իրենց լուսավոր ապագան։

Հայ ժողովուրդն իր ազգային մեծ տոնը, Սովետական իշխանության 27 տարին դիմավորում է այնպիսի մի ժամանակ, երբ համաշխարհային երկրորդ պատերազմի ավարտումից հետո, իմպերիալիստական գիշատիչները ԱՄՆ-ի և Անգլիայի գլխավորությամբ իրենց շուրջն են համախմբում աշխարհի բոլոր ռեակցիոն, ռազմատենչ, ֆաշիստական տարրերը և ձգտում են աշխարհը նորից ներգրավել ավազակային պատերազմի մեջ, փրկելու համար կապիտալիզմը անխուսափելի կործանումից, ողջ աշխարհում հաստատելու մի բուռն միլիար-



դատերերի տիրապետությունը։ Անգլո-ամերիկյան իմպերիալիստները իրենց հարվածի սուր ծայրն ուղղել են առաջին հերթին Սովետական Միության և Եվրոպայի նոր դեմոկրատական պետությունների դեմ։

Հայ ժողովուրդը Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ աչալուրջ կերպով հետևում է անգլո-ամերիկյան իմպերիալիստների նոր ոտնձգություններին։

«Դեմոկրատական ուժերի համախմբումը և համարձակ պայքարը իմպերիալիզմի ու ռազմական ավանտյուրաների նորանոր պլանների դեմ, ժողովուրդներին կմիավորի հզոր բանակի մեջ, որին հավասարը չի կարող ունենալ իմպերիալիզմը, որը ժխտում է ժողովուրդների դեմոկրատական իրավունքները, ոտնակոխ է անում ազգերի սուվերենությունը, իր պլանները կառուցում սպառնալիքների ու ավանտյուրաների վրա։ Անհանդստությունը և տագնապը իմպերիալիստների շարքերում աճում են, որովհետև բոլորը տեսնում են, որ իմպերիալիզմի ոտքի տակի հողը երերվում է, իսկ դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերը օրեց-օր աճում ու ամրապնդվում են... Իմպերիա-

*լիստների ջղագար ճիգերը, որոնց ոտքի տակ հողը երերում է, չեն փրկի կապիտալիզմը մոտալուտ կորստից։ Մենք ապրում ենք այնպիսի դարում, երբ բոլոր ուղիները տանում են դեպի կոմունիզմ»*(Մոլոտով)։

*Քսանյոթ տարի է, որ հայ ժողովուրդը Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ համընթաց քայլերով, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, մեծ Լենինի դրոշի ներքո, մեծ Ստալինի՝ հայ ժողովրդի մեծագույն փրկարարի ու բարեկամի առաջնորդությամբ ընթանում է դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները։*

*Ռ. ՄՈՎՍԻՍՅԱՆ*



*ԶՐՈՒՅՑ ԸՆՏՐԱԿԱՆ ՕՐԵՆՔԻ ՄԱՍԻՆ*

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՍԻՍՏԵՄՆ Է ԱՇԽԱՐՀՈՒՄ

*Ընտրական սիստեմ կամ իրավունք ասելով սովորաբար հասկացվում է իրավական նորմաների համակցությունը, որը որոշում և կարգավորում է ներկայացուցչական հիմնարկների ընտրությունների կարգը։*

*Յուրաքանչյուր պետության ընտրական սիստեմը նրա քաղաքական կառուցվածքի անմիջական արտացոլումն է։*

## Որո՞նք են սովետական ընտրական սիստեմի հիմնական սկզբունքները

*Սովետական ընտրական իրավունքն արտացոլում է բուրժուական հասարակակարգի դեմ հաղթանակ տարած բանվոր դասակարգի և սովետական ողջ ժողովրդի կամքը։ Նա հանդիսանում է ամբողջ աշխարհում երբևիցե գոյություն ունեցած և այժմ գոյություն ունեցող բոլոր ընտրական սիստեմներից ամենա-*

դեմոկրատականը։ Նա չգիտե ՍՍՌՄ քաղաքացու քաղաքական իրավունքների որևէ ճնշում կամ սահմանափակում։

Դեմոկրատիա՝ բառիս բուն իմաստով նշանակում է ժողովրդի իշխանություն։ Սովետական Սոցիալիստական պետությունը իսկական ժողովրդական պետություն է։ Սովետական երկրում ժողովուրդն իր կյանքի տերն է։ Սովետական երկրում հակասություններ չկան իշխանության և ժողովրդի միջև, որովհետև իշխանությունը ՍՍՌՄ-ում պատկանում է ժողովրդին։ Այդ պատճառով էլ սովետական պետությունը համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ ստեղծեց իսկական ընդհանուր, հավասար, ուղղակի ընտրական իրավունք, իսկական գաղտնի քվեարկությամբ։

Սովետական դեմոկրատիան չգիտե ոչ մի բացառում, ոչ մի վերապահություն, որովհետև շահագործող դասակարգերը մեր երկրում վերջնականապես ոչնչացված են, իսկ սովետական պետությունը դարձել է հզոր և անհաղթելի ուժ։

Ընտրական սիստեմը ՍՍՌՄ-ում միասնական է պետական իշխանության բոլոր օրգանների ընտրությունների համար, սկսած ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետից և վերջացրած



ամենաստորին օրգանով՝ աշխատավորների դեպուտատների գյուղական Սովետով։

## Բուրժուական ընտրական իրավունքը

Բուրժուական մի շարք երկրների կոնստիտուցիաները ձևականորեն, դեկլարատիվ կարգով սահմանում են ընդհանուր ընտրական իրավունք և ընդունում են դեմոկրատական որոշ սկզբունքներ, սակայն մյուս կողմից այդ կոնստիտուցիաները և բուրժուական ընտրական օրենքները սահմանում են մի շարք պահանջներ, որոնց պետք է բավարարի քաղաքացին, որպեսզի նրան թույլատրվի մասնակցել ընտրություններին։ Այդ պահանջները կոչվում են ցենզեր։ Բուրժուական կոնստիտուցիաներին և ընտրական օրենքներին հայտնի են հետևյալ ցենզերը՝

**Գույքային ցենզ.**— այսինքն ընտրողից (և հատկապես ընտրվողից) պահանջվում է, որպեսզի նա ունենա կամ անշարժ գույք կամ վճարի որոշ գումարից ոչ ցածր պետական հարկ, հնարավորություն ունենա սեփական միջոցներով վարձելու բնակարան։

**Նստակեցության ցենզ.**—անհրաժեշտ է, որպեսզի ընտրվողը տվյալ վայրում ապրի 3 ամսից մինչև 2 տարի։

**Կրթության ցենզ.**—պահանջվում է, որ քա-

ղաքացին ունենա այսքան դասարանից ոչ պակաս կրթություն, կամ գիտենա պետական լեզուն։

Գոյություն ունեն նաև տարիքի ցենզ, ազգային ռասսայական սահմանափակումներ, իսկ մի շարք երկրներում կանայք և զինվորականները բոլորովին զրկված են ընտրական իրավունքներից։

Վերոհիշյալ բոլոր սահմանափակումների հետևանքով, բուրժուական դեմոկրատիան կապիտալիստական երկրներում, որտեղ կան հակամարտ դասակարգեր, վերջին հաշվով դառնում է դեմոկրատիա ուժեղների համար, դեմոկրատիա ունևոր փոքրամասնության համար։ Բուրժուական դեմոկրատիան բուրժուազիայի տիրապետության ձևերից մեկն է։ Միայն պրոլետարիատի դիկտատուրան կարողացավ ապահովել բոլոր քաղաքացիների իրավական հավասարությունը։ Սովետական իշխանությունը իր գոյության հենց սկզբից սահմանեց աշխարհում ամենացածր տարիքը ընտրություններին մասնակցելու համար և վերացրեց ընտրական իրավունքի բաժանումը՝ «ակտիվի և պասսիվի»։

Ընկեր Ստալինը ասում է. «ՍՍՌՄ-ի նոր Կոնստիտուցիայի նախագծի առանձնահատկությունն այն է, որ նա ազատ է այդ-



պիսի վերապահումներից ու սահմանափակումներից։ Նրա համար գոյություն չունեն ակտիվ կամ պասսիվ քաղաքացիներ, նրա համար բոլոր քաղաքացիներն ակտիվ են։ Նա տարբերություն չի ընդունում տղամարդկանց ու կանանց, «նստակյացների» և «ոչ նստակյացների», ունևորների ու չունևորների, կրթվածների ու ոչ կրթվածների իրավունքների միջև։ Նրա համար բոլոր քաղաքացիներն իրենց իրավունքներով հավասար են։ Ո՛չ թե գույքային դրությունը, ո՛չ թե ազգային ծագումը, ո՛չ թե սեռը, ո՛չ թե պաշտոնական դրությունը, այլ յուրաքանչյուր քաղաքացու անձնական ընդունակությունները ու անձնական աշխատանքն են որոշում նրա դրությունը հասարակության մեջ»։

## Ընդհանուր ընտրություններ

Սովետական ընտրական սիստեմի սկզբունքներին համապատասխան, Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 109-րդ հոդվածը սահմանում է, որ՝ «Աշխատավորների դեպուտատների բոլոր Սովետների՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի, աշխատավորների դեպուտատների քաղաքային, շըր-

ջանային, ավանային ու գյուղական Սովետների դեպուտատների ընտրությունները կատարում են ընտրողներն ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ»։

Դեպուտատների ընտրությունները բոլոր Սովետների ընտրությունների ժամանակ, ընդհանուր են. Հայկական ՍՍՌ բոլոր քաղաքացիները, որոնց 18 տարին լրացել է ընտրությունների օրը, իրավունք ունեն դեպուտատներ ընտրելու, և ընտրվելու աշխատավորների դեպուտատների տեղական Սովետներում՝ անկախ ռասսայական և ազգային պատկանելությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից։ Ընտրություններին չեն մասնակցում միայն խելագարները և դատարանի կողմից դատապարտված, ընտրական իրավունքներից զրկված անձերը։ Կապիտալիստական ոչ մի երկրում այսպիսի ընտրական իրավունք չկա և չի կարող լինել։

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 17-րդ հոդվածի և աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների



Կանոնադրության 8-րդ հոդվածի համաձայն, Հայկական ՍՍՌ տերիտորիայում գտնվող միութենական մյուս բոլոր ռեսպուբլիկաների քաղաքացիները. Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի, ինչպես նաև աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների դեպուտատ ընտրելու և ընտրվելու իրավունքից օգտվում են Հայկական ՍՍՌ քաղաքացիների հետ հավասարապես։

Մեր ընդհանուր ընտրական իրավունքը սոցիալիզմի լիակատար հաղթության պայմաններում, պետության ղեկավարման, ժողովրդական կամքի դրսևորման, պետական տարբեր օրգանների գործունեության վրա հասարակական հսկողության գործում ժողովրդական մասսաների մասնակցության ամենահզորագույն միջոցներից մեկն է։

## Հավասար ընտրություններ

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 111-րդ և աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների Կանոնադրության 3-րդ հոդվածի համաձայն, աշխատավորների դեպուտատների ընտրությունները հավասար են. յուրաքանչյուր քաղաքացի ունի

մեկ ձայն. բոլոր քաղաքացիներն ընտրություններին մասնակցում են հավասար հիմունքներով: Հետևաբար ոչ մի ընտրող մի այլ ընտրողի նկատմամբ ոչ մի առավելություն չունի: Կանայք ընտրելու և ընտրվելու իրավունքից օգտվում են տղամարդկանց հետ հավասարապես: Սովետական բանակի շարքերում գտնվող քաղաքացիները նույնպես ընտրելու և ընտրվելու իրավունքից օգտվում են բոլոր քաղաքացիների հետ հավասարապես: Այդ նշանակում է, Սովետների ընտրությունների ժամանակ մեզ մոտ կանայք նույն իրավունքներն ունեն, ինչ որ տղամարդիկ: Գյուղացիները նույն իրավունքներն ունեն, ինչ որ բանվորները: Մեզ համար հավասարապես հարգելի են ինտելիգենտի, գիտնականի, զինվորականի և ծառայողի ձայնը:

Մեր ընտրությունների հավասարությունը ցայտուն կերպով ի հայտ է գալիս նաև ընտրական օկրուգներ ստեղծելու սիստեմի մեջ:

Ինչպես Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետը, նույնպես և աշխատավորների դեպուտատների մյուս Սովետները ընտրվում են ըստ ընտրական օկրուգների՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետը 5.000 բնակչից



մեկ դեպուտատ, շրջանային Սովետը — մեկ դեպուտատ 1000 բնակչից: Քաղաքային Սովետը և ռայոնական Սովետը քաղաքներում, նայած քաղաքի կամ քաղաքային ռայոնի մեծությանը, մեկ դեպուտատ ոչ պակաս 350 բնակչից և ոչ ավելի, քան 1000 բնակչից. գյուղական և ավանային Սովետները՝ մեկ դեպուտատ 100 բնակչից: Ընտրական օկրուգներ կազմելու այդ նորմաները մեզ մոտ անխախտ են:

## «Հավասար» ընտրությունների վիճակը բուրժուական երկրներում

Մի քանի բուրժուական երկրների կոնստիտուցիաներ ազդարարում են հավասար ընտրություններ, սակայն այդպիսիք այս կամ այն վերապահումներով միշտ խախտվում են: Հավասար ընտրական իրավունք այդ երկրներում չկա: Կապիտալիստական որոշ երկրներում, ընտրողների որոշ մասին տրվում է երկու և ավելի ձայն, օրինակ՝ Անգլիայում արդյունաբերական և առևտրական ձեռնարկությունների տերերը, ինչպես նաև նրանց կանայք, իրավունք ունեն կրկնակի ձայնի՝ մեկը ըստ իրենց բնակության վայրի, իսկ մյուսը ըստ նրանց ար-

դյունաբերական կամ առևտրական ձեռնարկության գտնված վայրի։ Այսպիսով անգլիական մոտ կես միլիոն հարուստներ 2-ական ձայն ունեն։ Այնտեղ կրկնակի ձայնի իրավունք ունեն նաև համալսարանավարտները՝ մեկն ըստ բնակության վայրի, իսկ մյուսն ըստ համալսարանական օկրուգի։

Ընտրական այդպիսի սիստեմը հասկանալի է, որ ձեռնտու է մի բուռն հարուստների, որոնք ձգտում են ապահովել իրենց դասակարգի տիրապետող դիրքն ընտրություններում։ Այդ ավելի ցայտուն կերպով արտահայտվում է ընտրական օկրուգներ կազմելու բուրժուական սիստեմի մեջ։ Կան երկրներ, որտեղ բուրժուական փոքրաթիվ բնակչություն ունեցող վայրերում կազմում են մեկ ընտրական օկրուգ, որը նույնքան դեպուտատ է ընտրում, որքան մի քանի տասնյակ անգամ շատ բնակչություն ունեցող բանվորական վայրի օկրուգը. օրինակ՝ Անգլիայում Ռոկֆորդի ընտրական օկրուգը, ուր կենտրոնացված է բանվորական բնակչություն, 125.754 ընտրողներով տալիս է մեկ դեպուտատ, իսկ Ուելսի համալսարանական ընտրական օկրուգը, որն ունի 5.121



ընտրող, նույնպես տալիս է մեկ դեպուտատ։

Նույնանման ընտրական «աշխարհագրություն» կիրառվում էր նաև ցարական Ռուսաստանում։ Այսպես 1907 թ. հունիսի 3-ի ընտրական օրենքի համաձայն, Պետական դումայի համար, Եվրոպական Ռուսաստանում 729 հազար բնակչից էր ընտրվում մեկ դեպուտատ, իսկ Սիբիրում՝ մեկ միլիոն բնակչից։ Վ. Ի. Լենինի արտահայտությամբ այդ արվում էր այն նպատակով, որպեսզի չքավորությունը «դուրս մղվի» քաղաքականությունից։

## Ուղղակի ընտրություններ

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 114-րդ հոդվածի համաձայն, աշխատավորների դեպուտատների բոլոր Սովետների ընտրությունները, սկսած աշխատավորների դեպուտատների գյուղական ու քաղաքային Սովետներից մինչև Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետը, կատարվում են անմիջականորեն, ուղղակի ընտրությունների միջոցով։

Ընտրողներն անմիջականորեն իրենք են դեպուտատներ ընտրում յուրաքանչյուր Սովետի համար։

Ուղղակի ընտրությունների միջոցով մեր ընտրողները լավ իմանում են, թե ում օգտին են տալիս իրենց ձայները ոչ միայն իշխանության տեղական օրգանների՝ աշխատավորների դեպուտատների Սովետների, այլև ռեսպուբլիկայի գերագույն օրգանի ընտրությունների ժամանակ։ Ուղղակի ընտրությունները ամրացնում են ընտրողների կապը պետական իշխանության բոլոր օրգանների հետ և նպաստում նրանց աշխատանքի բարելավմանը։

Բուրժուական երկրներում սովորաբար պառլամենտի վերին պալատները կամ նշանակովի են, կամ եթե ընտրովի է, ապա բազմաստիճան ընտրությունների միջոցով. օրինակ Ֆրանսիայում սենատի ընտրությունը կատարվում է բազմաստիճան ընտրությամբ, իսկ Անգլիայում լորդերի պալատը նշանակովի է և կազմված է արքայական ծագում ունեցող և տիտղոս ունեցող ազնվականներից։

Ընկեր Վ. Մ. Մոլոտովը ՍՍՌՄ Սովետների 7-րդ համագումարում 1935 թ. փետրվարի 6-ին արած զեկուցման մեջ ասում է, որ «...Ուղղակի ընտրությունները էլ ավելի կբարձրացնեն Սովետական իշխանության



օրգանների հեղինակությունը և էլ ավելի կուժեղացնեն այդ օրգանների կապն աշխատավորության լայն մասսաների հետ։ Բանվորներն ու գյուղացիներն ավելի լավ կճանաչեն իրենց ներկայացուցիչներին ոչ միայն շրջանում և մարզում, այլև Սովետական պետության կենտրոնական օրգաններում, էլ ավելի անմիջականորեն կապված կլինեն նրանց հետ, և դրանով, իսկ Սովետական իշխանության ղեկավար օրգանների ամբողջ աշխատանքն ավելի բարձր աստիճանի պետք է բարձրացվի»։

## Ընտրություններ գաղտնի քվեարկությամբ

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 115-րդ հոդվածի համաձայն, աշխատավորների դեպուտատների բոլոր Սովետների ընտրությունները կատարվում են գաղտնի քվեարկությամբ։ Գաղտնի քվեարկությունը մի այնպիսի կարգ կամ ձև է, որի ժամանակ քվեարկությունը կատարվում է մյուս ընտրողների և ընդհանրապես կողմնակի մարդկանց բացակայությամբ ընտրական բյուլետենները լրացնելու միջոցով։ Ընտրական օրենքը ապահովում է քվեարկության այնպիսի կարգ, որի ժամանակ յուրաքանչյուր

ընտրող քվեարկում է անձամբ։ Ստանալով ընտրական հանձնաժողովից բյուլետենը, ընտրողը գնում է այդ բյուլետենը լրացնելու համար հատկացված սենյակը և իր ձայնը տալով համապատասխան թեկնածուին, ընտրական բյուլետենը անձամբ իջեցնում է քվեատուփի մեջ։ Այսպիսով որևէ մեկը չի կարող իմանալ, թե ընտրողը ո՞ւմ օգտին է քվեարկել։ Ընտրական բյուլետենները լրացնելու համար հատկացված հատուկ սենյակներում կամ կաբիններում արգելվում է որևէ մեկի, այդ թվում նաև ընտրական հանձնաժողովի անդամների ներկայությունը, բացի քվեարկողից։ Այդպիսի քվեարկությունն ապահովում է յուրաքանչյուր քաղաքացու լիակատար ազատություն ու կամքի արտահայտության անկախությունը իր ձայնը տալու այն թեկնածուներին, որոնց նա վստահում է։

Ընկեր Ստալինը ասում է մեր ընտրությունները գաղտնի են՝ «հենց այն պատճառով, որ մենք ուզում ենք սովետական մարդկանց լիակատար ազատություն տալ՝ քվեարկելու հօգուտ նրանց, ում ուզում են ընտրել, ում վստահում են նրանք իրենց շահերի ապահովումը»։



Գաղտնի քվեարկությունը հնարավորություն է տալիս մերժելու ոչ պիտանի թեկնածուներին, վերահսկելու ընտրված անձանց գործունեության վրա, իսկ ընտրված դեպուտատը հաշվի առնելով հասարակական կարծիքը, ձգտում է ավելի լավ աշխատել և բարեխղճորեն վերաբերվել դեպի գործը, դեպի իր պետական պարտականությունները։ Գաղտնի քվեարկությունը ուժեղացնում է մասսաների քաղաքական ակտիվությունը, ընդարձակում է մասսայական վերահսկողությունը, օժանդակում է ի հայտ բերելու սովետական ապարատի աշխատանքի թույլ տեղամասերը, ամրացնում է Սովետական իշխանության օրգանների կապը ժողովրդի հետ։ Գաղտնի քվեարկությունն մեզանում նշանակում է սովետական դեմոկրատիզմի հետևողական կիրառումն ու աճը ինչպես ասել է ընկեր Մոլոտովը՝ Սովետական իշխանության ձգտումը իր օրգանների աշխատանքը դնելու բանվորների ու գյուղացիների ուժեղ հսկողության տակ։

Կապիտալիստական դեմոկրատիայի պայմաններում ընտրողների կամքը հաճախ խեղաթյուրվում է զանազան խարդախություններով և գաղտնիությունը կատարյալ

անքակտություն է դառնում։ Թե իրենից ինչ է ներկայացնում քվեարկության «գաղտնիքը» բուրժուական երկրներում, կարելի է դատել թեկուզ այն բանից, որ օրինակ՝ Ճապոնիայում ընտրական կամպանիայի ժամանակ հաճախ կարելի է հանդիպել այսպիսի հայտարարությունների՝ «փնտրում եմ 100 ձայն 50 իենով»։

Ամերիկայի Միացյալ Նահանգներում ընտրական ձայները բուրժուական պարտիաների կողմից համարյա գնվում և վաճառվում են։ ԱՄՆ-ում ընտրությունները անցկացնող հատուկ պրոֆեսիոնալ անձինք գոյություն ունեն, որոնք կոչվում են «պոլիտիկաներ», «բոսեր»։ Նրանցից շատերը ընտրական կամպանիաների ընթացքում այս կամ այն բուրժուական պարտիայի օգտին ձայներ գնելու և վաճառելու հետևանքով հարստացել են այն աստիճանի, որ դարձել են միլիարդատեր։

Ամեն կարգի խարդախություններ սարքելը, կապոցներով բյուլետեններ քվեատուփերի մեջ գցելը կառավարող պարտիայի թեկնածուների օգտին, կամ ոչ ցանկալի թեկնածուների ընտրական բյուլետենները քվեատուփերով «պատահաբար» ոչնչացնելը



սովորական և բնորոշ կողմերն են կապիտալիստական «գաղտնի» քվեարկության։

Անգլիական մի ամսագրի տեղեկություններով, լորդերի պալատում 429 տեղ, սկսած 19-րդ դարի կեսերից, գնվում էր փողով։

Բուրժուական ընտրական իրավունքի կեղծ լինելը և ՍՍՌՄ-ում ընտրական իրավունքի իսկական դեմոկրատական բնույթը խորը կերպով պարզաբանել է ընկեր Ստալինը ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի մասին իր զեկուցման մեջ. «Նոր Կոնստիտուցիայի նախագծի առանձնահատկությունն այն է, որ նա չի սահմանափակվում քաղաքացիների ձևական իրավունքների ֆիքսացիայով, այլ ծանրության կենտրոնը փոխադրում է այդ իրավունքների ապահովելու հարցի վրա, այդ իրավունքներն իրականացնելու միջոցների վրա... Նա ոչ թե սոսկ հռչակում է դեմոկրատական ազատություններ, այլև դրանք օրենսդրական կարգով ապահովում է նյութական որոշ միջոցներով։ Ուստի հասկանալի է, որ նոր Կոնստիտուցիայի նախագծի դեմոկրատիզմը ոչ թե «սովորական» և «հանրաճանաչ» դեմոկրատիզմ է, ընդհանրապես, այլ սոցիալիստական դեմոկրատիզմ»։

## Ընտրությունների կազմակերպումը

Սովետական ընտրական սիստեմի (ընտրությունների տեխնիկայի) կազմակերպչական հարցերը ունեն խոշոր քաղաքական նշանակություն: Այդ կազմակերպչական հարցերին են վերաբերում՝ ընտրողների ցուցակներ, ընտրական օկրուգներ և տեղամասեր, ինչպես նաև ընտրական հանձնաժողովներ կազմելը, դեպուտատության թեկնածուներ առաջադրելու կարգը, քվեարկության արդյունքների որոշումը:

Հայկական ՍՍՌ ընտրական սիստեմի հիշյալ կազմակերպչական հարցերը որոշվում են ինչպես Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների, նույնպես և աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների կանոնադրություններով:

Մեր ընտրական կանոնադրությունների համաձայն, ընտրված է համարվում այն թեկնածուն, որը ձայների բացարձակ մեծամասնություն է ստանում, այսինքն տվյալ օկրուգի ընտրողների տված և վավերական ճանաչված ձայների կեսից ավելին:



Ընտրությունների արդյունքները պարզելու միանգամայն ուրիշ կարգ է սահմանված կապիտալիստական երկրներում, մասնավորապես Անգլիայում, ԱՄՆ-ում և այլն: Այդ երկրներում կիրառվում է այսպես կոչված հարաբերական մեծամասնության սկզբունքը, ըստ որի ընտրված լինելու համար դեպուտատության թեկնածուն ընտրություններին պետք է ստանա ձայների հասարակ մեծամասնությունը համեմատած տվյալ օկրուգում քվեարկվող մյուս թեկնածուների հետ: Ձայների այսպիսի մեծամասնությունը երբեմն չի հասնում ընտրողների ընդհանուր թվի ոչ միայն 50 տոկոսին, այլ մինչև անգամ 25 տոկոսի: Օրինակ, եթե մի ընտրական օկրուգում, ուր կա 2.000 ընտրող, արձանագրված են դեպուտատության 3 թեկնածուներ և քվեարկության վերջում պարզվել է, որ մի թեկնածու ստացել է 200 ձայն, մյուսը 250 ձայն, երրորդը՝ 300 ձայն, ընտրված է համարվում դեպուտատության այն թեկնածուն, որն ստացել է ձայների հարաբերական մեծամասնություն, այսինքն 300 ձայն:

Սովետական ընտրական օրենքների համաձայն տվյալ դեպքում ոչ մի դեպուտա-

տության թեկնածու ընտրված չէր համարվի, քանի որ դրանցից ոչ ոք ընտրողների ձայների բացարձակ մեծամասնություն չի ստացել:

Կապիտալիստական երկրներում հաճախ ձայներ հաշվելու «տեխնիկան» կեղծում է քվեարկության արդյունքները: Այնտեղ պակաս դեր չեն խաղում կեղծ ձայներով քվեարկելու խարդախ կոմբինացիաները, ձայներ, որ մատակարարում են երբեմն հենց ոստիկանության գործակալները, նպատակ ունենալով դեպուտատ անցկացնել բուրժուազիային ցանկալի թեկնածուների:

Սովետական երկրում ընտրությունների ժամանակ մեր ընտրողների գաղտնի արտահայտված կամքը պաշտպանվում է մեր Սովետական Սոցիալիստական պետության ամբողջ ուժով: Ամեն մեկը, ով բռնությամբ, խաբեությամբ, սպառնալիքի կամ կաշառքի միջոցով խոչընդոտ կհանդիսանա Հայկական ՍՍՌ քաղաքացուն ազատորեն իրագործելու Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների Սովետներում ընտրելու և ընտրվելու իրավունքը, պատժվում է ազատազրկմամբ մինչև 2 տարի ժամանակով:

Էլ ավելի խիստ պատիժ է սպառնում



այն պաշտոնատար անձին, կամ ընտրական հանձնաժողովի անդամին, որը փորձ կանի կեղծելու ընտրական փաստաթղթերը կամ սխալ կհաշվի ձայները: Նման դեպքերում Կանոնադրությունը նախատեսնում է ազատազրկում մինչև 3 տարի ժամանակով:

## Թեկնածուներ առաջադրելու իրավունքն ու կարգը

Ըստ Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 117-րդ հոդվածի, ինչպես Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի, նույնպես և Աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների դեպուտատության թեկնածուների առաջադրման իրավունքը պատկանում է հասարակական կազմակերպություններին և աշխատավորների ընկերություններին՝ հանձինս պրոֆեսիոնալ միությունների, կոմունիստական պարտիական կազմակերպությունների, երիտասարդական կազմակերպությունների և կուլտուրական ընկերությունների: Այդ կազմակերպությունների, ինչպես ռեսպուբլիկական, այնպես էլ շրջանային օրգանները, հավասարապես նաև բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները ձեռնարկու-

թյուններում ու հիմնարկություններում, զինծառայողների ժողովները զորամասերում, գյուղացիների ընդհանուր ժողովները կոլխոզներում ու գյուղերում, սովխոզների բանվորների ու ծառայողների ժողովները սովխոզներում, ազատ, անարգել կերպով առաջադրում են ինչպես Գերագույն, նույնպես և աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների դեպուտատության իրենց թեկնածուներին։

Բուրժուական երկրներում դեպուտատության թեկնածուներ առաջադրող օրգանների թիվը խիստ սահմանափակ է։ Փաստորեն այդ իրավունքը իրացնում են զանազան քաղաքական պարտիաները, նրանցից ամենաուժեղները, օրինակ՝ ԱՄՆ-ում սահմանված է, որ դեպուտատության թեկնածուներ առաջադրելու իրավունք ունեն միայն պարտիաները։ Անգլիայում 1935 թ. պարլամենտական ընտրությունների ժամանակ ընտրված 615 դեպուտատները զանազան պարտիաների անդամներ էին, պարլամենտում չկար ոչ մի անպարտիական։ Անգլիայում պարլամենտի դեպուտատության թեկնածու առաջադրելու համար, անհրաժեշտ է նախապես վճարել 150 ֆունտ ստերլինգ



(3057,6 ռ), և ոչ պակաս 100 ֆունտ ստերլինգ ընտրական ծախսերի համար։ Ճապոնիայում այդ գրավականը արտահայտվում է 2.000 իենով (3934,5 ռ)։ Ընտրությունների ժամանակ թեկնածուների տապալման դեպքում, այդ գրավականը բռնագրավվում է հօգուտ պետության։ 1930 թ. այդպիսի տուգանքներից ճապոնական կառավարության ստացած ընդհանուր գումարը հավասարվում էր 740 հազար իենի։

ՍՍՌՄ-ում ոչ միայն ոչ մի նման բան գոյություն չունի, այլև ընտրությունների բոլոր ծախսերը կատարվում են Սովետական պետության հաշվին։

Մեզ մոտ թեկնածուներին առաջադրում է ինքը ժողովուրդը, ելնելով բացառապես այս կամ այն քաղաքացու անձնական ընդունակություններից, նրա աշխատանքից ու նրա վերաբերմունքից դեպի իր՝ Սովետական քաղաքացու պարտականությունները, նրա նվիրվածությունը սոցիալիզմի համար մղվող պայքարի գործին, նրա ցուցաբերած նվիրվածությունը մեր մեծ Հայրենիքին, Լենինի-Ստալինի մեծ պարտիային։ Մեզ մոտ հասարակական մի կազմակերպության կողմից առաջադրված դեպուտատու-

թյան թեկնածուն պաշտպանվում է մյուս կազմակերպությունների կողմից։ Կոմունիստական պարտիան միշտ հանդես է գալիս անկուսակցականների հետ բլոկ կազմած՝ թեկնածու առաջադրելու և այդ թեկնածությունը պաշտպանելու ու անցկացնելու համար։ Այդ պայմանավորված է մեր հասարակակարգի սոցիալիստական սիստեմով, որովհետև մեր ժողովուրդը ունի մի միասնական շահ, մի ընդհանուր նպատակ։ Դեպուտատության թեկնածուն կարող է քվեարկվել միայն մեկ օկրուգում, սակայն միևնույն անձնավորությունը կարող է արձանագրվել և քվեարկվել նաև ուրիշ ընտրական օկրուգի աշխատավորների դեպուտատների Սովետում ընտրվելու համար. օրինակ՝ ըստ մեկ ընտրական օկրուգի՝ գյուղսովետում ընտրվելու համար և ըստ մյուս ընտրական օկրուգի՝ շրջանային Սովետում ընտրվելու համար։ Մեր ընտրական Կանոնադրության համաձայն, դեպուտատության թեկնածուն չի կարող լինել այն օկրուգի օկրուգային ընտրական հանձնաժողովի կամ տեղամասային ընտրական հանձնաժողովի անդամ, որտեղ նա առաջադրված է իբրև դեպուտատության թեկնածու։



## Դեպուտատի հաշվետու լինելը իր ընտրողների առաջ

Սովետական ընտրական սիստեմի սոցիալիստական դեմոկրատիզմը նաև այն է, որ դեպուտատն ամեն ժամանակ կարող է ետ կանչվել իր ընտրողների կողմից։ Դեռ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի նախօրեին Վ. Ի. Լենինը «Քաղաքական պարտիաները Ռուսաստանում և պրոլետարիատի խնդիրները» բրոշյուրում գրել էր, որ իսկական դեմոկրատիզմը ենթադրում է «...Բոլոր ու ամեն տեսակ դեպուտատների ոչ միայն ընտրականություն, այլև ամեն ժամանակ պաշտոնանկ անելու իրավունք»։ Վ. Ի. Լենինի այդ մտքերը իրենց իրավաբանական արտացոլումը գտան Համառուսական Կենտգործկոմի կողմից 1917 թվի դեկտեմբերի 4-ին (նոյեմբերի 21) ընդունված «Դեպուտատներին ետ կանչելու իրավունքի մասին» դեկրետում։

Վերոհիշյալ սկզբունքը այնուհետև իր օրենսդրական ամրապնդումը գտավ ՌՍՖՍ Ռեսպուբլիկայի 1918 թ. Կոնստիտուցիայում (հոդ. 78), ինչպես և մյուս բոլոր սովետա-

կան ռեսպուբլիկաների կոնստիտուցիաներում։

Սովետական Կոնստիտուցիային հայտնի են 3 իրավական ինստիտուտներ՝

ա) Նակազ դեպուտատին, բ) դեպուտատի հաշվետվությունը յուր ընտրողների առաջ և գ) ընտրողների իրավունքը դեպուտատին ետ կանչելու մասին։ Այդ ինստիտուտները լիակատար կերպով ապահովում են դեպուտատների կախվածությունը և նրանց սերտ կապը ընտրողների հետ։

Ընկեր Ստալինը 1937 թ. դեկտեմբերի 11-ին Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում արտասանած ճառում ասել է՝ «Եթե վերցնելու լինենք կապիտալիստական երկրները, ապա այնտեղ դեպուտատների և ընտրողների միջև գոյություն ունեն ինչ-ինչ յուրահատուկ, ես կասեի՝ բավականին տարօրինակ հարաբերություններ։ Քանի դեռ ընտրություններն են տեղի ունենում դեպուտատները սիրախաղում են ընտրողների հետ, քծնում են, հավատարմության երդումներ տալիս, մի կույտ ամեն տեսակի խոստումներ անում։ Դուրս է գալիս, որ դեպուտատները լիակատար



կախում ունեն ընտրողներից։ Հենց որ ընտրությունները կայացան և թեկնածուները դեպուտատներ դարձան, հարաբերություններն արմատապես փոխվում են։ Փոխանակ, որ դեպուտատները ընտրողներից կախում ունենան, ստացվում է նրանց լիակատար անկախությունը... Դեպուտատն իրեն զգում է միանգամայն ազատ, ժողովրդից, իր ընտրողներից անկախ»։

Նույն ճառում, դեպուտատին ետ կանչելու մեր իրավունքի մասին ընկեր Ստալինն ասում է. «Դա մի երևելի օրենք է, ընկերներ։ Դեպուտատը պետք է գիտենա, որ ինքը ժողովրդի ծառան է, նրա պատգամավորը Գերագույն Սովետում, և նա պետք է այնպիսի ուղղություն բռնի, ինչ ժողովուրդն է իրեն հրահանգել։ Ճանապարհից շեղվեց թե չէ, ընտրողներն իրավունք ունեն պահանջելու, որ նոր ընտրություններ նշանակվեն և ճանապարհից շեղված դեպուտատին նրանք իրավունք ունեն սևացնելու... Իմ խորհուրդն է, դեպուտատության թեկնածուի խորհուրդն իր ընտրողներին՝ միտները պահել ընտրողների այդ իրավունքը՝ դեպուտատներին ժամկետից շուտ ետ կանչելու իրավունքը, հետևել իրենց դեպուտատներին, վերհսկել





ԳԻՆԸ 1 Ռ.

նրանց և, եթե նրանց մտքովն անցնի շեղվել ճիշտ ճանապարհից, ապա թոթափել նրանց իրենց ուսերից, պահանջել, որ նոր ընտրություններ նշանակվեն»:

Այսպիսով ընտրողներն իրենց դեպուտատներին ներշնչում են լինել այնպիսին, ինչպիսին էր մեծ Լենինը, ինչպիսին է ընկեր Ստալինը: Դեպուտատը պետական շահերը բոլոր շահերից վեր է դասում, նա չունի ավելի վեհ խնդիր, քան ժողովրդին ծառայելը:

Հ. ՄԵՍՐՈՊՅԱՆ
(Հայկական ՍՍՌ դատախազի տեղակալ, իրավաբանական գիտությունների թեկնածու)



Պատասխանատու խմբագիր՝
Ա.Ր. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

ՎՖ 03872 Պատվեր № 1394 Տիրաժ 9600
Ստորագրված է տպագրության 17/XI 1947 թ.
Պոլիգրաֆ և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора